Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։


---

## 27 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹՅԱՄԲ՝ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

*Քսանյոթ տարի առաջ, 1924 թվականի հունվարի 21-ին, դաժան մահը մեզնից խլեց բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության ստեղծող, համաշխարհային պրոլետարիատի հանճարեղ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինին։ Անցած 27 տարիները մի ամբողջ վիթխարի դարաշրջան են կազմում հասարակության վերափոխման պատմության մեջ։ Այդ տարիները մեր երկրի համար պատմական, համաշխարհային նշանակություն ունեցող ժամանակաշրջան են, կոմունիզմի կառուցման համար մղած պայքարի փառահեղ հաղթանակների տարիներ։*

*Վ. Ի. Լենինի մահվան 27-րդ տարեդարձը Սովետական Միության ժողովուրդը նշում է քաղաքական, տնտեսական և կուլտուրական*

43

կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած նորանոր հաղթանակների պայմաններում։ Հաջողությամբ իրականացված են ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան նոր հնգամյա պլանի հոյակապ խնդիրները, բուժվել են պատերազմի հասցրած վերքերը։ Խոշոր չափով ավելացել է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը։ Կենսագործվում է բնության վերափոխման ստալինյան պլանը, գերակատարված է հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը։

Սովետական ժողովուրդը հաջողությամբ ավարտում է Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարությունը և ձեռնամուխ է եղել կոմունիզմի մեծ կառուցումների՝ Կույբիշևյան, Ստալինգրադյան, Կախովկայի հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինարարությանը։ Ժողովրդական տնտեսության վերելքը մեր երկրում ուղեկցվում է ազգային եկամտի ավելացումով, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա աճով։ Հետպատերազմ-



յան նոր հնգամյա պլանով նախատեսված էր, որ ազգային եկամտի ծավալը 1950 թվականին պետք է նախապատերազմյան մակարդակը գերազանցի 38 տոկոսով։ Արդեն 1949 թվականին Սովետական Միության ազգային եկամուտը համարյա հասավ այդ մակարդակին, իսկ 1950 թվականին ազգային եկամուտը համադրական գներով նախապատերազմյան մակարդակը գերազանցեց զգալի չափով, քան նախատեսված էր հնգամյակով։ Նոր վերելք է ապրում սովետական գիտությունը, կուլտուրան, գրականությունը։ Այս բոլորը արդյունք են սոցիալիստական հասարակակարգի, Լենինի-Ստալինի անհաղթ գաղափարների, արդյունք են լենինիզմի։ Լենինիզմը լուսավորում է բոլոր երկրների աշխատավոր մասսաների ուղին։ Լենինիզմի դրոշի տակ խոշոր հաղթանակների են հասել սոցիալիզմի ուղին ոտք դրած ժողովրդական դեմոկրատիայի երկրները, Չինական ժողովրդական ռեսպուբլիկան և Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկան։

Վ. Ի. Լենինի հանճարով ստեղծված մեր սովետական հասարակակարգը վերափոխող

մեծ ազդեցություն է թողնում ամբողջ համաշխարհային պատմության զարգացման վրա։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հուշակած սկզբունքները ներկայումս միավորում են սոցիալիզմի և դեմոկրատիայի հզոր լագերը, որին գլխավորում է Սովետական հզոր Միությունը։

ՍՍՌՄ-ը խաղաղության հուսալի պատվարն է ամբողջ աշխարհում։



Վ. Ի. Լենինի մահվան ծանր ու վըշտալի օրերին բոլշևիկյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեն պարտիային ուղղած իր դիմումի մեջ գրել է. «Այն ամենը, ինչ պրոլետարիատի մեջ իսկապես մեծ է և հերոսական,— անվեհեր միտքը, երկաթե, անընկճելի, համառ, ամեն ինչ հաղթահարող կամքը, սրբազան ատելությունը, մահու չափ ատելությունը ստրկության և ճնշման նկատմամբ, լեռներ շարժող ռևոլյուցիոն կիրքը, մասսաների ստեղծարար ուժի նկատմամբ անսահման հավատը, կազմակերպական հսկայական հանճա-



րը,— այդ բոլորն իր հիանալի մարմնացումն էր գտել Լենինի մեջ, որի անունը դարձել է նոր աշխարհի ժողովուրդների սիմվոլը արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս»։

Լենինի մահվան այդ վշտալից օրերին Սովետների Երկրորդ համագումարում ընկեր Ստալինը բոլշևիկյան պարտիայի անունից պատմական երդում տվեց՝ բարձր ու մաքուր պահել պարտիայի անդամի մեծ կոչումը, աչքի լույսի պես պահպանել մեր պարտիայի միասնությունը, պահպանել և ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան, բոլոր ուժերով ամրապնդել բանվորների և գյուղացիների դաշինքը, ամրապնդել մեր երկրի ժողովուրդների եղբայրական համագործակցությունը, ամրապնդել և ընդլայնել Ռեսպուբլիկաների Միությունը, ամրապնդել մեր Սովետական Բանակը և Սովետական Նավատորմը, ամրապնդել և ընդլայնել ամբողջ աշխարհի աշխատավորների դաշինքը։

Բոլշևիկների պարտիան, ընկեր Ստալինի առաջնորդությամբ, սրբությամբ է կատարել ու կատարում է պատմական այդ մեծ երդումը։ Սովետական ժողովուրդը, կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, ընկեր Ստալինի իմաստուն առաջնորդությամբ, մեր

երկիրը դարձրել է հզոր, ինդուստրիալ-կոլխոզային սոցիալիստական տերություն, կառուցել է սոցիալիզմ, պաշտպանել սոցիալիզմի մեծ նվաճումները գերմանական ու ճապոնական իմպերիալիստներից, փրկել Եվրոպայի և ամբողջ աշխարհի ժողովուրդներին ֆաշիստական ստրկության սպառնալիքից, ամրապնդել և ընդարձակել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը և այժմ հաջողությամբ կառուցում է կոմունիզմը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, սոցիալիզմի կառուցումը մեր երկրում, Սովետական Միության մեծագույն հաղթանակը երկրորդ համաշխարհային պատերազմում, ժողովրդական դեմոկրատիայի հաղթանակը հարավ-արևելյան և կենտրոնական Եվրոպայի երկրներում, չինական ռևոլյուցիայի հաղթանակը, Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի ստեղծումը, ամենուրեք կոմունիստական պարտիաների քանակի և ազդեցության ուժեղացումը,—այս համաշխարհային պատմական իրադարձությունները, որ հագեցնում են մեր էպոխան, ասում են այն մասին, որ 20-րդ դարը դա՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի դարն է։



Անսահման մեծ են Լենինի մատուցած ծառայությունները բանվոր դասակարգին, ամբողջ պրոգրեսիվ մարդկությանը։ Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայությունը ամենից առաջ կայացավ նրանում, որ նա ընկեր Ստալինի հետ միասին ստեղծեց ու դաստիարակեց բոլշևիկների պարտիան։ Լենինի ամբողջ կյանքը և գործունեությունն անխզելիորեն կապված է բոլշևիկյան պարտիայի պատմության հետ։

Լենինն իր ամբողջ ուժն ու գիտելիքները տվեց բանվոր դասակարգի ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի ստեղծման, նրա դաստիարակության, նրա ամրապընդման գործին։ Բոլշևիկյան պարտիայի հիմնադրի և առաջնորդի հիասքանչ կերպարը բացառիկ խորաթափանցությամբ բնորոշել է Լենինի հավատարիմ զինակից, նրա գործի հանճարեղ շարունակող և զարգացնող ընկեր Ստալինը։

«90-ական թվականների վերջից,— ասում է ընկեր Ստալինը,— և մանավանդ 1901 թվականից հետո, «Իսկրա»-յի հրատարակումից հետո, Լենինի ռևոլյուցիոն գործունեության հետ իմ ունեցած ծանոթությունն ինձ այն համոզման բերեց, որ մենք հանձին Լենինի արտասովոր մի մարդ ունենք։

Նա այն ժամանակ իմ աչքում պարտիայի հասարակ մի ղեկավար չէր, նա պարտիայի փաստական ստեղծողն էր, որովհետև մենակ նա էր, որ հասկանում էր մեր պարտիայի ներքին էությունը և անհետաձգելի կարիքները։ Լենինը բարձրագույն տիպի ղեկավար, լեռնային արծիվ էր, որը պայքարի մեջ երկյուղ ասած բանը չգիտեր և պարտիան համարձակորեն առաջ էր տանում ռուսական ռևոլյուցիոն շարժման անծանոթ ուղիներով։

Լենինը և Ստալինը գիտականորեն հիմնավորեցին բանվոր դասակարգի մարտական, ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի ստեղծման անհրաժեշտությունը։

Լենինը և Ստալինը հիմնեցին մարքսիստական այդ նոր տիպի պարտիան, նրան զինեցին ամենահաղթ ուսմունքով՝ մարքսիզմ-լենինիզմով։

Լենինի-Ստալինի պարտիան դարձավ բանվոր դասակարգի առաջնորդը, նրա բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը։

Լենինը և Ստալինը կռեցին կոմունիստական պարտիայի գաղափարական հզոր



զենքը՝ լենինիզմը։ «Մեր պարտիայի ունեցած բոլոր հարստություններից,— ասում է ընկեր Ստալինը,— ամենակարևոր և արժեքավոր հարստությունը հանդիսանում է նրա գաղափարական հարստությունը, նրա գաղափարական բագաժը, նրա սկզբունքային գիծը, նրա ռևոլյուցիոն հեռանկարները»։

Դեպի սոցիալիզմի հաղթանակը տանող դժվարին ուղու վրա կատաղի դասակարգային պայքարի պայմաններում, պարտիան ընկեր Ստալինի ղեկավարությամբ հետ մղեց լենինիզմի թշնամիների բազմաթիվ գրոհները, ջախջախեց բոլոր ու ամեն տեսակ օպորտունիստական խմբերին և իր շարքերից վռնդեց բոլոր թերահավատներին, օպորտունիստներին, կապիտուլյանտներին և դավաճաններին։ Ընկեր Ստալինը, որպես Լենինի գործի հանճարեղ շարունակող, պաշտպանեց լենինիզմի ուսմունքի անաղարտությունը բանվոր դասակարգի թշնամիներ Երկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստների, տրոցկիստների, բուխարինականների, զինովևականների և բոլշևիզմի բոլոր հակառակորդների դեմ մղած կատաղի պայքարում, զարգացրեց մարքսիստական-լենինյան թեորիան, կռեց և դաստիարակեց այնպիսի

կադրեր, որոնք հաջողությամբ առաջ են մղում մեր պարտիայի մեծ գործը։

Լենինի ամենամեծ ծառայություններից մեկը դա մարդկության մեջ առաջին անգամ բանվորների և գյուղացիների առաջին սոցիալիստական պետության ստեղծումն է։

Ամեն մի սոցիալական ռևոլյուցիայի սկզբունքային (?) հիմնահարցը հանդիսանում է պետական իշխանության հարցը։

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները՝ Մարքսը, Էնգելսը, Լենինը և Ստալինը եկան այն հաստատ համոզմանը, որ հին հասարակական-տնտեսական կարգերը ոչնչացնելու և աշխատավորությանը դեպի կոմունիզմի կառուցումը առաջնորդելու համար անհրաժեշտ է պրոլետարիատի դիկտատուրայի հաստատում։

Վ. Ի. Լենինը հայտնագործեց Սովետական իշխանության ձևը, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև։ Լենին-Ստալինի գլխավորությամբ, ռուսական և համաշխարհային կոնտրռևոլյուցիայի դեմ մղվող պայքարի կրակի ու բոցերի մեջ ծնվեց սովետական բազմազգ առաջին պետությունը՝ իր բոլորովին նոր տիպի օրգաններով և օրենսդրությամբ։



Մեր Հայրենիքի համար և կոմունիզմի ամբողջ գործի համար մեծագույն երջանկություն է, որ Լենինից հետո սովետական պետության գլուխ կանգնեց ընկեր Ստալինը, որի գլխավորությամբ Սովետական պետությունն ամրապնդվեց և հզորացավ։ Սովետական պետական կարգն ամբողջ աշխարհի առաջ դրսևորեց իր մեծագույն առավելությունները կոմունիզմի համար մղվող պայքարում։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների և ճապոնական ագրեսորների դեմ մղած Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմում ամբողջ ուժով դրսևորվեց սովետական պետության անխորտակելի հզորությունը։

«Մենք ունենք այժմ,— ասում է ընկեր Ստալինը,— միանգամայն կազմակերպված և բոլոր փորձություններին դիմացած բազմազգ սոցիալիստական պետություն, որի ամրությանը կարող էր նախանձել ամեն մի ազգային պետություն, աշխարհի ամեն մի մասում»։

Լենինի և Ստալինի հանճարին է պատկանում մեր երկրի սոցիալիստական վերակառուցման մեծ պլանը։ ՍՍՌՄ-ում սովետական ժողովրդի կողմից, բոլշևիկների պարտիայի

ղեկավարությամբ կառուցված սոցիալիզմը — լենինիզմի ամենահաղթ գաղափարների կենդանի մարմնացումն է։ Ընկեր Ստալինը զարգացրեց մեկ երկրում սոցիալիզմի կառուցման լենինյան թեորիան և գործնականորեն ղեկավարեց սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Ստալինյան հնգամյակների իրագործման շնորհիվ, արմատապես փոխվեց մեր Հայրենիքի դեմքը։ Ընկեր Ստալինի հանճարով իրագործվեց մեր երկրի սոցիալիստական ինդուստրացման մեծ պլանը։

Ստալինյան հնգամյակների տարիներին լիովին կերպարանափոխվեց սովետական գյուղը։ Կոլխոզային կարգը, որի ուղին գծել են մեծ Լենինը և Ստալինը, դարձել է սովետական պետության ուժի հզոր աղբյուրը։ Սովետական Միությունը դարձել է զարգացած կուլտուրայի և առաջավոր գիտության երկիր։

***

Իրագործելով անմահ Լենինի պատգամները, սովետական ժողովուրդը ընկեր Ստալինի ղեկավարությամբ կառուցեց մեր երկրում սոցիալիստական հասարակություն և այժմ ընթանում է սոցիալիզմից դեպի կոմունիզմ։

Փշրվեցին իմպերիալիստների հույսերն այն մասին, թե Սովետական Միությունը,



որն ամենից ավելի էր տուժել վերջին պա-
տերազմում, չի կարող հաղթահարել հետ-
պատերազմյան շինարարության դժվարու-
թյունները։ Սովետական Միությունը ոչ
միայն իր ուժերով հաղթահարեց այդ
դժվարությունները, այլև 1950 թվա-
կանը փակեց մեծագույն հաղթանակ-
ներով։ Հայտնի է, որ հետպատերազմ-
յան հնգամյա պլանի հիմնական խնդիր-
ներն էին՝ վերականգնել երկրի տուժած շըր-
ջանները, վերականգնել արդյունաբերության
և գյուղատնտեսության նախապատերազմ-
յան մակարդակը և այնուհետև նշանակալից
չափով գերազանցել այդ մակարդակը։ Հըն-
գամյակի այդ խնդիրները հաջողությամբ
կատարվեցին։ Արդյունաբերության համա-
խառն արտադրանքի թողարկման գծով նա-
խապատերազմյան մակարդակը 1950 թվա-
կանի 11 ամիսներին գերազանցվել է 72 տո-
կոսով։
Ժողովրդական տնտեսության արագ աճը
զգալիորեն բարձրացրեց Սովետական Միու-
թյան տեսակարար կշիռը համաշխարհային
արդյունաբերական արտադրանքի մեջ։ Մեր
սոցիալիստական կոլխոզային գյուղատնտե-
սությունը հանդիսանում է աշխարհում ամե-
նախոշոր մեքենայացված գյուղատնտեսու-

թյունը։ Լուծված է հացահատիկային պրոբլեմը։ 1950 թվականին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը գերազանցեց զգալի չափերով. ընդ որում ցորենի համախառն բերքը 1940 թվականի համեմատությամբ գերազանցեց 340 միլիոն փթով։ Գերակատարված է անասնաբուծության եռամյա պլանը։ Կոլխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ներկայումս 38 տոկոսով ավելի է քան մինչև պատերազմը. ոչխարներինն ու այծերինը՝ 65 տոկոսով, խոզերինը՝ 55 տոկոսով։ Կոլխոզներն ու սովխոզները հասել են տոհմային անասունների գլխաքանակի զգալի ավելացման։

Սովետական Միության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում սոցիալիստական սիստեմի տարած հաղթանակները հնարավորություն ստեղծեցին մարդկության պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում կառուցելու նոր, սոցիալիստական էկոնոմիկա, որը չգիտե,— ինչպես ասում է ընկեր Ստալինը,— կրիզիսներ ու գործազրկություն, չգիտե աղքատություն ու քայքայում և որը տալիս է քաղաքացիներին բոլոր



հնարավորությունները՝ ունևոր ու կուլտուրական կյանքի համար»։

Հաջողությամբ զարգանում են սովետական գրականությունն ու արվեստը, գիտությունը, որոնք մեզ մոտ լիովին ծառայում են ժողովրդի շահերին։ Նոր խոշոր քայլեր են արվել լուծելու ընկեր Ստալինի կողմից սովետական գիտնականների առաջ դրված խնդիրը՝ «մոտ ժամանակներն ոչ միայն հասնել, այլև անցնել մեր երկրի սահմաններից դուրս գիտության ունեցած նվաճումներից»։ Ատոմային էներգիայի գաղտնիքը բացահայտելուց անմիջապես հետո սովետական գիտնականները բազմաթիվ այլ խոշոր աշխատանքներով ու հայտնագործություններով նպաստեցին տեխնիկական պրոգրեսին, մեր ժողովրդա-տնտեսական պլանների կատարմանն ու գերակատարմանը։ Ուժեղացվել է գիտության և արտադրության կապը։

Բացառիկ կարևոր նշանակություն ունեն և նոր ավանդ են հանդիսանում մարքսիզմ-լենինիզմի գանձարանում ընկեր Ստալինի լեզվաբանության վերաբերյալ աշխատությունները։

Սովետական Միության մեջ ժողովրդական տնտեսության զարգացման հիման վրա հե-

տևողականորեն բարձրանում է ռուբլու գնողունակությունը և բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը։ Հաջորդաբար տեղի է ունենում մասսայական սպառման ապրանքների գների իջեցում, աճում է քաղաքի և գյուղի աշխատավորության նյութական և կուլտուրական աստիճանը։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում ավելի ու ավելի են սրվում դասակարգային հակասությունները, իսկ իմպերիալիստական ռեակցիան ուժեղացնում է իր հարձակումն աշխատավորության տնտեսական ու դեմոկրատական իրավունքների դեմ, Սովետական Միությունում ավելի քան ուժեղացել է ժողովուրդների քաղաքական-բարոյական միասնությունն ու բարեկամությունը, ավելի քան ծավալվում ու ծաղկում է սովետական սոցիալիստական դեմոկրատիան։ Մեր երկրի աշխատավորներն այժմ ավելի քան սերտորեն են համախմբված բոլշևիկյան պարտիայի, սովետական կառավարության և Լենինի գործի հանճարեղ շարունակող, մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական Հայրենիքի նոր, հզոր վերելքի



մեջ վառ կերպով դրսևորվեց լենինիզմի ամենահաղթ ուժը։

ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման փաստն ունի միջազգային վիթխարի նշանակություն։ Մեր երկրի փորձը ցույց տվեց, որ չի կարելի սոցիալիզմ կառուցել առանց կապիտալիստների ու կալվածատերերի իշխանության տապալման և նրանց դիմադրության ճնշման, առանց մասնավոր սեփականության ոչնչացման, առանց շահագործող դասակարգերի ոչնչացման։

Վ. Ի. Լենինի այդ դրույթների ճշտությունն այժմ իր հաստատումն է գտնում նոր, ժողովրդական դեմոկրատիայի երկրների պրակտիկայում, որոնք հաջողությամբ կառուցում են սոցիալիզմ, ծավալուն կերպով օգտագործելով ՍՍՌՄ-ի օրինակն ու փորձը։

Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը մեր երկրի ուժն ու հզորությունը տեսան մեր մեծ Միության բազմազգ ժողովուրդների բարեկամության ամրության մեջ. «ՍՍՌՄ ժողովուրդների միջև բարեկամությունը,— ասում է ընկեր Ստալինը,— մեծ և լուրջ նվաճում է, որովհետև քանի այդ բարեկամությունը գոյություն ունի, մեր երկրի ժողովուրդները կլինեն ազատ և անպարտելի։ Ոչ ոք սարսափելի չէ մեզ համար— ոչ ներ-

ցին, ոչ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունն ապրում է և բարգավաճում։

Ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամությունը սովետական բազմազգ պետության մեջ, մեր երկրում կառուցված սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկն է, նրա մեջ դրսևորվում է լենինիզմի ամենահաղթ ուժը։

Ցարական Ռուսաստանի երբեմնի տնտեսապես ու կուլտուրապես հետամնաց ժողովուրդները, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ, ռուս մեծ ժողովրդի, ռուս ականավոր ազգի օգնությամբ Սովետական Միության ժողովուրդների իրավահավասար ընտանիքում հասել են տնտեսական ու կուլտուրական խոշոր զարգացման։

Դրա լավագույն ապացույցը կարող է ծառայել Սովետական Հայաստանի օրինակը։ Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ Հայաստանը դարձել է Սովետական Միության առաջավոր ռեսպուբլիկաներից մեկը՝ իր զարգացած արդյունաբերությամբ, կոլխոզային գյուղատնտեսությամբ, ծաղկած կուլտուրայով ու գիտությամբ։ Սովետական Հայաստանը դարձել է



քիմիական, շինանյութի, մետաղամշակման, էլեկտրաշինարարության, ծանր ու թեթև արդյունաբերության բազմաթիվ կարևոր ճյուղեր ունեցող առաջավոր արդյունաբերության ռեսպուբլիկա։

Աննախընթաց վերելք է ապրում հայկական կոլխոզային գյուղը։ Ռեսպուբլիկան ծածկվել է դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, գրադարանների, ակումբների, թատրոնների, գիտահետազոտական հիմնարկությունների խիտ ցանցով։ Ստեղծվել են ազգային ինտելիգենցիայի՝ գիտնականների, գրողների, արվեստագետների, բժիշկների, ինժեներների, ագրոնոմների, ուսուցիչների հազարավոր բարձրորակ կադրեր, որոնք հաջողությամբ առաջ են տանում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Մեծ են լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ մեր ռեսպուբլիկայի ձեռք բերած հաջողությունները։ Հայ ժողովուրդը այդ հաջողությունները ձեռք է բերել, որովհետև նա իր բախտը հաստատորեն կապել է Սովետական իշխանության բախտի հետ, որովհետև նա առաջ է ընթանում լենինիզմի հաղթական դրոշի ներքո,

Լենինի-Ստալինի ամենահաղթ գաղափարներով:



Մարքսիզմ-լենինիզմի գաղափարների մեծագույն հաղթանակը այժմ դրսևորվում է նոր ուժով իմպերիալիզմի դեմ պրոգրեսիվ ուժերի կողմից տարվող նորանոր հաղթանակներում: Լենինյան ուսմունքը մեծագույն ազդեցություն է թողնում համաշխարհային ռևոլյուցիոն շարժման ամբողջ ընթացքի վրա, իմպերիալիզմի դեմ աշխարհի ազատատենչ մարդկանց մղած ազատագրական պայքարի ընթացքի վրա:

Լենինի գաղափարները նորանոր հաղթանակներ են տանում, նրանք մարմնավորվում են կյանքում, իսկ իմպերիալիզմի և ֆաշիզմի ռեակցիոն քաղաքականությունը, նրանց նողկալի իդեոլոգիան պարտություն պարտության ետևից է կրում:

Երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ սովետական ժողովրդի տարած համաշխարհային պատմական հաղթանակը հանգեցրեց Կենտրոնական և Հարավ-արևելյան Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների անջատմանը կապիտալիզմի սիստեմից:



Լենինիզմի գաղափարների նշանակալից հաղթանակ է հանդիսանում այն փաստը, որ Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի կոմունիստական և բանվորական պարտիաները, ղեկավարվելով Լենինի և Ստալինի ուսմունքով, ոտքի հանեցին իրենց երկրների աշխատավորներին, ջախջախեցին ռեակցիոն ռեժիմները, հաստատեցին ժողովրդական դեմոկրատիայի կարգեր և իրականացրին սոցիալիստական վերափոխումներ իրենց երկրներում:

Լենինիզմի գաղափարների կենսական մեծ ուժը իր խոր արտահայտությունը գտավ չին մեծ ժողովրդի պատմական հաղթանակի մեջ, ժողովուրդ, որ իր հերոսական կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տապալեց ֆեոդալական ռեակցիայի դարավոր լուծը, ամերիկա-անգլիական իմպերիալիզմի անարգ. շղթաները և կանգնեց նոր կյանքի կառուցման ճանապարհի վրա:

«Կենտրոնական և Հարավ-արևելյան Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, Հյուսիսային Կորեայում և Չինաստանում,— ասում է ընկ. Միկոյանը,— սոցիալիստական բարեփոխությունների ստրատեգիան և տակտիկան, ինչպես նաև

կապիտալիստական երկրների կոմունիստական պարտիաների ստրատեգիան և տակտիկան ամբողջովին հիմնվում են դասակարգային պայքարի լենինյան-ստալինյան գիտության վրա»:

Խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի համար խոշոր հաղթանակ է համարվում Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կազմվելը: Ընկեր Ստալինի բնորոշմամբ «Գերմանական Դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլիկայի կազմվելը շրջադարձային կետ է հանդիսանում Եվրոպայի պատմության մեջ»:

Լենինիզմի գաղափարների կենսական մեծ ուժն իր վառ արտահայտությունն է գտնում կոմունիստական շարժման աճման ու ամրապնդման մեջ: Համաշխարհային իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի ղեկավարությունը գտնվում է կոմպարտիաների ձեռքում, որոնք զինված Լենինի-Ստալինի ուսմունքով, հաջողությամբ գլխավորում են աշխատավորության պայքարը: Լենինիզմի համաշխարհային հաղթանակի լավագույն ապացույցներից մեկը՝ դա կոմպարտիաների քանակական աճն է ու մասսաների վրա նրանց քաղաքական-գաղափարական ազդեցության ուժեղացումը:



Մարդկության պատմությունը չգիտե ոչ մի քաղաքական ուսմունք, որն այնքան արագ ու ծավալուն տարածվեր աշխարհի բոլոր մասերում և համակեր ժողովրդական լայն մասսաներին, ինչպես Լենինի-Ստալինի ուսմունքը, ռևոլյուցիոն մարքսիզմ-լենինիզմը: Լենինիզմի մեծագույն նշանակությունը, որպես պրոլետարական ռևոլյուցիայի թեորիա ու տակտիկա՝ ընդհանրապես և պրոլետարիատի դիկտատուրայի թեորիա ու տակտիկա՝ հատկապես, հատուկ ուժով արտահայտվում է այժմ Արևելյան և Հարավարևելյան Եվրոպայի ու Չինաստանի օրինակներով, որոնք կարողացան պատռել իմպերիալիզմի շղթան, դուրս եկան իմպերիալիզմի սիստեմից և կանգնեցին սոցիալիզմի ուղու վրա:

Պատմությունը չէր տեսել գաղութային ժողովուրդների ազգային ազատագրական պայքարի այնպիսի օրինակ, ինչպիսին գընում է հատկապես Արևելյան և Հարավարևելյան Ասիայում: Այստեղ բառացիորեն վառվում է իմպերիալիստների ոտքի տակի հողը: Կորեական ժողովրդի հերոսական պայքարը ամերիկյան իմպերիալիստների, լիսինմանականների և ամերիկյան կամակատարների դեմ հայրենասիրության, լենի-

նիզմի գաղափարների հավատարմության փայլուն օրինակ է։ «Ձեռքներդ հեռու Կորեայից», այս է խաղաղասեր մարդկության կամքը։ Կորեական հայրենասերների և չինական կամավորների հաղթանակները օր օրին ավելի են բազմապատկվում։ Կորեան դարձել է ճնշված ու կախյալ երկրների ազատագրական շարժման դրոշ։

Ազատագրական պայքարը գնալով ավելի է ծավալվում իմպերիալիզմի դեմ գաղութային և կախյալ երկրներում։ Լենինիզմի դրոշի ներքո իմպերիալիստական ռեակցիայի դեմ համառ պայքար է մղում կապիտալիստական երկրների պրոլետարիատը։

Իմպերիալիզմի դեմ ուժեղացող ռևոլյուցիոն պայքարը ավելի քան ուժեղացնում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը, թուլացնում նրա դիրքերն ամբողջ աշխարհում։

Այժմ բոլորի աչքի առաջ տեղի է ունենում կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացումը։

20-րդ դարը կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակների դարն է։ Ամերիկա-անգլիական կառավարող շրջանները, որ արդեն անցել են բացահայտ ագրեսիայի, վիժեցնում են Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքումը, ստեղ-



ծում են Արևմտա-գերմանական բանակ, ձգտում են Գերմանիան և Ճապոնիան դարձնել ռազմական պլացդարմ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։

Իմպերիալիստները աճող հակասություններից դուրս գալու ելք են որոնում անընդհատ նոր պատերազմ նախապատրաստելու մեջ։ ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն շրջանները ձգտում են զինված ուժով իրագործել համաշխարհային տիրապետություն ստեղծելու իրենց խելացնոր պլանները։ Առաջին համաշխարհային պատերազմից հետո Լենինը գրել է, որ «իդեալականացված դեմոկրատական ռեսպուբլիկան» ԱՄՆ-ը իրոք հանդիսացավ ամենակատաղի իմպերիալիզմի, թույլ և փոքր ժողովուրդների ամենաանամոթ ճնշման ու խեղդման ձև»։

Լենինյան այդ խոսքերը ակնառու կերպով մերկացնում են ԱՄՆ-ի ներկայիս կառավարող շրջանների էքսպանսիոնիստական ագրեսիվ քաղաքականությունը։

Սակայն որքան էլ ամերիկա-անգլիական իմպերիալիստները գործի դնեն Ուոլ-ստրիտի պրովոկացիան, դիմեն դոլարի ու ատոմային ռումբի լպրախաղացությանը, նրանց ագրեսիվ պլանները դատապարտված

են ձախողման, որովհետև ամբողջ աշխարհի ժողովուրդները պատերազմ չեն ցանկանում։

Լայն ծավալ է ստացել պայքարը խաղաղության համար։ Այդ շարժումն ընդգրկել է ֆիզիկական ու մտավոր աշխատանքի ավելի քան 800 միլիոն մարդկանց, դեմոկրատական, պրոֆմիութենական կազմակերպությունների, երիտասարդության, կանանց ու կուլտուրայի գործիչների բազմաթիվ կազմակերպությունների։

1950 թվականը հանդիսացավ իմպերիալիստական լագերի հետագա բոլոր հակասությունների ավելի քան խորացման տարի, նրա ուժերի թուլացման տարի։ Իսկ մյուս կողմից՝ նա հանդիսացավ դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի ուժերի է՛լ ավելի աճման տարի։ Դրա պայծառ վկայությունը խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի արդյունքներն էին, Ստոկհոլմյան Կոչի տակ դրված 500 միլիոն ստորագրությունները։ Ավելի քան 115 և կես միլիոն սովետական մարդիկ, այսինքն Սովետական Միության ամբողջ մեծահասակ բնակչությունը ստորագրել է Ստոկհոլմյան Կոչի տակ։

Վ. Ի. Լենինի մահվան 27-րդ տարեդարձը



նշվում է Սովետական պետության լենինյան-ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականության նորանոր հաղթանակների պայմաններում։

Սովետական Միության անդադրում պայքարը ժողովուրդների խաղաղության և բարեկամության համար է՛լ ավելի է բարձրացրել և ուժեղացրել ՍՍՌՄ-ի հեղինակությունը ամբողջ աշխարհի աշխատավորության մեջ։

Սովետական Միությունը հանդիսանում է խաղաղության հուսալի պատվարը, կայուն խաղաղության համար պայքարող ժողովուրդների ավանգարդը։

Սովետական Միության ղեկավարությամբ օր օրին նորանոր հաջողություններ է ձեռք բերում դեմոկրատական, հակաիմպերիալիստական լագերը։ Դեմոկրատիայի և խաղաղության լագերի ուժերի հարաճուն վերելքը ընդունակ է պատերազմի հրձիգներին այնպիսի հուժկու հարված հասցնելու, որը կհանգեցնի ոչ թե մեկ կամ մի քանի ագրեսիվ տերության կործանմանը, ինչպես մինչև օրս եղել է, այլ համաշխարհային իմպերիալիզմի ամբողջ սիստեմի կործանմանը։

Այդ է ուսուցանում լենինիզմը։

Կենսագործելով Լենինի պատգամները, բոլշևիկյան պարտիան ընկեր Ստալինի առաջնորդությամբ սովետական ժողովրդին տանում է դեպի կոմունիզմը։ Կոմունիզմի կառուցման շահերը պահանջում են մեզանից՝ հաջողությունների կողքին տեսնել նաև մեր թերությունները ու սխալները, ծավալել բոլշևիկյան քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որը հանդիսանում է մեր առաջընթացի հզոր գործոնը։ Բոլշևիկյան պարտիայի մեծ հիմնադիրները ու առաջնորդները Լենինը և Ստալինը մեզ ուսուցանում են անհաշտ լինել դեպի թերությունները ու սխալները. «Քաղաքական պարտիայի վերաբերմունքը դեպի իր սխալները,— ասում է Լենինը,— պարտիայի լրջության և իր դասակարգի ու աշխատավոր մասսաների նկատմամբ նրա կողմից իր պարտականությունները գործնականում կատարելու կարևորագույն ու ամենաճիշտ չափանիշներից մեկն է։ Բացե ի բաց խոստովանել սխալը, բացահայտել դրա պատճառները, վերլուծել դրան ծնունդ տված իրադրությունը, ուշի ուշով քննարկել սխալն ուղղելու միջոցները— ահա դա է լուրջ պարտիայի հատկությունը, ահա դա է նրա կողմից իր պարտականությունների կատա-



րումը, ահա դա է դասակարգի, ապա նաև մասսաների դաստիարակումը և ուսուցումը»։

Ինքնաքննադատության լոզունգը,— ասում է ընկեր Ստալինը,— «Դրված է բոլշևիկյան պարտիայի բուն հիմքում։ Այն դրված է պրոլետարիատի դիկտատուրայի ռեժիմի հիմքում... Մենք ինքներս պետք է երևան բերենք և ուղղենք մեր սխալները, եթե ուզում ենք առաջ շարժվել...»։

Թող պարտիան, թող բոլշևիկները, թող մեր երկրի բոլոր ազնիվ բանվորներն ու աշխատավոր տարրերը,— սովորեցնում է ընկեր Ստալինը,— երևան բերեն մեր աշխատանքի թերությունները, մեր շինարարության թերությունները, թող նշեն մեր թերությունների վերացման ուղիները, որպեսզի մեր աշխատանքի մեջ և մեր շինարարության մեջ չլինի լճացում, ճահճացում, նեխում, որպեսզի մեր ամբողջ աշխատանքը, մեր ամբողջ շինարարությունը, օրեցօր բարելավվի և հաջողությունից հաջողություն ընթանա։

Մեր հետագա առաջընթացի համար կարևոր նշանակություն ունի աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը։ Անհրաժեշտ է ավելի քան ծավալել

աշխատանքը աշխատավորությանը լենինիզմի իդեաներով դաստիարակելու համար։ Պետք է համառորեն ուսումնասիրել թեորիան, միշտ հիշել, որ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների տիրապետումը հանդիսանում է մեր պարտիական, սովետական, տնտեսական, հասարակական կազմակերպությունների հաջող աշխատանքի վճռական պայմանը։

Նշելով Վ. Ի. Լենինի մահվան 27-րդ տարեդարձը, մեր բանվորների, գյուղացիության, ինտելիգենցիայի խնդիրն է՝ ծավալել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ նորանոր հաջողությունների հասնելու, պետական պլանները կատարելու և գերակատարելու, կոմունիզմի ստալինյան կառուցումները հաջող ավարտելու համար։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Հայաստանի աշխատավորները բարձր խանդավառությամբ նախապատրաստվում են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրություններին, որը տեղի է ունենալու ընթացիկ տարվա փետրվարի 25-ին։ Ռեսպուբլիկայի աշխատավորները, մոբիլիզացնելով իրենց բոլոր ուժերը, ընտրությունները կնշանավորեն արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտու-



րայի ու գիտության բնագավառում ձեռք բերած նորանոր հաջողություններով։

Քվեարկելով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, նրանք մեկ անգամ ևս կցուցադրեն իրենց բարոյական ու քաղաքական միասնությունը, անսահման սերն ու նվիրվածությունը բոլշևիկների պարտիայի, սովետական կառավարության և Մեծ Ստալինի նկատմամբ։

Լենինի դրոշով, ընկեր Ստալինի առաջնորդությամբ սովետական ժողովուրդը ընթանում է դեպի կոմունիզմի հաղթանակը մեր երկրում։

—O—

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*1950 թվականի դեկտեմբերի 24-ին հսկայական խանդավառությամբ Հայաստանի աշխատավորները, բոլորը մեկ մարդու պես, մասնակցեցին աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին։*

*Այդ ընտրությունները կրկին անգամ ցուցադրեցին ժողովրդի կուռ համախմբվածությունը բոլշևիկների սիրելի պարտիայի և մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։*

*Աշխատավորների դեպուտատների քաղաքային Սովետների ընտրություններին մասնակցեց բոլոր ընտրողների 99,99 տոկոսը, իսկ գյուղական և ավանային Սովետների ընտրություններին՝ 100 տոկոսը։*

*Ընտրություններին մասնակցած ընտրողների 99,88 տոկոսը իր ձայնը տվեց աշխատավորների դեպուտատների քաղաքային Սովետների դեպուտատության թեկնածուների օգտին և 99,84 տոկոսը՝ աշխատա-*



*վորների դեպուտատների գյուղական ու ավանային Սովետների դեպուտատության թեկնածուների օգտին։*

*Տեղական Սովետների անցած ընտրությունների ընթացքում քիչ աշխատանք չկատարեցին մեր ագիտատորները։*

*Ռեսպուբլիկայում գործում էին 1290 ագիտպունկտ, 2245 ագիտկոլեկտիվ և մոտ 29000 ագիտատոր։ Ագիտատորները աշխատում էին ակտիվ կերպով ու բարեխղճորեն, ընտրությունների նախապատրաստման օրերին աշխատավորների լայն մասսաներին պարզաբանելով ընտրությունների քաղաքական նշանակությունը, Սովետական դեմոկրատիայի հարցերը, Սովետական Միության ներքին ու արտաքին դրության, մեր երկրում կոմունիզմի կառուցման և ամբողջ աշխարհում խաղաղության համար սովետական ժողովրդի կողմից մղվող պայքարի հարցերը։*

*Սակայն աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում կատարված ագիտացիոն-մասսայական աշխատանքի փորձը ցույց տվեց, որ այդ աշխատանքում դեռ գոյություն ունեն լուրջ թերություններ։*

Ապարանի, Ջանգիբասարի, Սևանի և ռեսպուբլիկայի այլ շրջաններում վատ էր կազմակերպվել ագիտատորների ընտրության և ագիտկոլեկտիվների կոմպլեկտավորման գործը, ագիտատորներին ցույց տրվող օգնությունը, նրանց անհրաժեշտ նյութերով ապահովելը, որի հետևանքով ագիտացիոն աշխատանքի գաղափարական-քաղաքական մակարդակը ցածր էր և չէր համապատասխանում մեր ընտրողների աճած պահանջներին։

Հաշվի առնելով այս թերությունները, պարտիական կազմակերպությունները և ագիտատորները պետք է արագորեն վերացնեն դրանք, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման շրջանում նոր, ուժգին թափով ծավալեն ագիտացիոն-մասսայական աշխատանքը բնակչության մեջ, լայնորեն օգտագործելով նախորդ ընտրությունների ընթացքում կուտակած դրական փորձը։

Առաջիկա ընտրական կամպանիայի ընթացքում ագիտատորների գլխավոր խնդիրներից մեկը պետք է լինի՝ բոլոր ընտրողների գլխովին ընդգրկումը ագիտացիոն աշխատանքում։ Ո՛չ մի ընտրող դուրս չպետք է մնա ագիտացիոն-մասսայական աշխատան-



քից — այս պետք է լինի յուրաքանչյուր ագիտատորի լոզունգը։

Ագիտատորները լայն աշխատանք պետք է ծավալեն ընտրողներին ոչ միայն սովետական ընտրական սիստեմը և Սովետական դեմոկրատիայի հարցերը պարզաբանելու ուղղությամբ, այլև պետք է աշխատավորներին լայնորեն պարզաբանեն այն քաղաքական և աշխատանքային վերելքը, որով համակված՝ Սովետական Միության աշխատավորներն ընթանում են դեպի միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ընտրությունները, ցույց տան, որ ընտրությունների նախապատրաստությունն ընթանում է մի այնպիսի իրադրության մեջ, երբ Սովետական ժողովուրդը բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, մեծ Ստալինի առաջնորդությամբ նոր պատմական հաղթանակ տարավ — հաջողությամբ կատարեց հետպատերազմյան հնգամյա պլանը, ձեռք բերեց ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի նոր վերելք և անհրաժեշտ պայմաններ ստեղծեց սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար։

1950 թվականի տասնմեկ ամսում մեր երկրում 72 տոկոսով գերազանցվեց արդյու-

նաբերության համախառն արտադրանքի նախապատերազմյան մակարդակը, իսկ հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1950 թվականին հասավ 7 միլիարդ 600 միլիոն փթի, այսինքն՝ ավելի քան 340 միլիոն փթով գերազանցեց նախապատերազմյան՝ 1940 թվականի մակարդակը։

Զգալիորեն բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը և սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը։

Ագիտատորները աշխատավորների հետ ունեցած զրույցների ընթացքում լայնորեն պետք է պարզաբանեն Սովետական Հայաստանի՝ տնտեսական և կուլտուրական զարգացման բնագավառում ձեռք բերած նվաճումները, հատկապես հետպատերազմյան տարիներին, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 1947 և 1951 թվականների ընտրությունների միջև ընկած ժամանակաշրջանում ձեռք բերած նվաճումները։

Ագիտատորները պետք է ցույց տան, որ միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ընտրությունների նախապատրաստումն ու անցկացումը տեղի է ունենալու բոլշևիկների պարտիայի նկատմամբ աշխատավոր լայն մասսաների հարաճուն վստահության իրադրության մեջ, պարտիա,



որի քաղաքականությունը սովետական ժողովուրդը համարում է իր քաղաքականությունը և լիովին պաշտպանում այն։

Անհրաժեշտ է զրույցների ընթացքում լուսաբանել Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, նրա հետևողական պայքարը նոր պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգների դեմ։

Ագիտատորների կողմից անցկացվող զրույցները վերացական բնույթ չպետք է կրեն, դրանք սերտորեն կապակցված պետք է լինեն աշխատավորների առաջ, տվյալ ձեռնարկության, կոլխոզի, ցեխի աշխատողների առաջ դրված կոնկրետ խնդիրների հետ։ Ագիտատորի յուրաքանչյուր զրույցը պետք է նպաստի աշխատավորների քաղաքական ու աշխատանքային ակտիվության վերելքին, արտադրական պլանների հաջող կատարմանը։

Զրույցներ անցկացնելով աշխատավորների հետ, ագիտատորները պետք է ուշադիր կերպով ունկնդրեն ընտրողների ձայնին, ժամանակին հաշվի առնեն նրանց դիտողությունները, օգնեն այն թերությունների վերացմանը, որոնց մասին ահազանգում են աշխատավորները։

Ագիտատորներն իրենց զրույցների ընթացքում մեծ տեղ պետք է հատկացնեն սովետական դեմոկրատիայի հարցերի, սովետական ընտրական սիստեմի, ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիաների, սովետական քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների, բուրժուական նեխող «դեմոկրատիայի» հանդեպ սովետական դեմոկրատիայի մեծ առավելությունների պարզաբանմանը։

Նախորդ ընտրությունների փորձը ցույց տվեց, որ առանձին ագիտատորներ խնամքով չէին նախապատրաստվում զրույցներին, իրենց ձեռքի տակ չունեին անհրաժեշտ նյութեր և հաճախ սահմանափակվում էին սոսկ Կոնստիտուցիայի կամ ընտրությունների Կանոնադրության առանձին հոդվածների ընթերցումով, բազմապիսություն չէին մտցնում իրենց զրույցների մեջ, որի հետեվանքով զրույցներն անցնում էին անհետաքրքիր, առանց անհրաժեշտ արդյունքի։

Ագիտատորը խնամքով պետք է պատրաստի իր ամեն մի զրույցը, դարձնելով այն հետաքրքիր, նպատակասլաց։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման և անց-



կացման շրջանում լայնորեն պետք է օգտագործել ագիտացիոն-մասսայական աշխատանքի բոլոր բազմապիսի ձևերը,— աշխատավորների միտինգներ ու ժողովներ, դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ, թերթերի ընթերցում, ցուցադրական ագիտացիա և այլն։

Առանձնապես մեծ ուշադրություն պետք է դարձնել ընտրական տեղամասերում ագիտատորների կողմից տարվող աշխատանքին, որտեղ անընդհատ աշխատանք պետք է կատարվի կոնսուլտացիաների, զրույցների, թերթերի ընթերցման և ընտրողներին հետաքրքրող բոլոր հարցերի վերաբերող տեղեկանքներ տալու գծով։

Այս ամբողջ աշխատանքում մեծ դործ ունեն կատարելու մեր ագիտատորները։

Ամրապնդելով նախորդ ընտրությունների ընթացքում ձեռք բերած հարուստ փորձը, խելացիորեն օգտագործելով եղած միջոցները ու հնարավորությունները, մեր ագիտատորները պետք է գործադրեն իրենց բոլոր ջանքերը նոր, հզոր թափով ծավալելու ագիտացիոն մասսայական աշխատանքը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում։



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

**Նյութեր զեկուցումների և զրույցների համար՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների առթիվ։**

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրով 1951 թվի փետրվարի 25-ին տեղի են ունենալու Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները խոշորագույն իրադարձություն են ռեսպուբլիկայի կյանքում։ Ինչպես միշտ, այնպես էլ առաջիկա ընտրությունների ընթացքում նորից փայլուն կերպով կդրսևորվի Սովետական Հայաստանի աշխատավորների բարոյաքաղաքական միասնությունը, բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության և անձամբ մեծ Ստալինի նկատմամբ ունեցած անհուն սերն ու նվիրվածությունը։ Գե-



րագույն Սովետի ընտրությունները, որոնք իսկական դեմոկրատական, ժողովրդական ընտրություններ են, քաղաքական-հասարակական ակտիվ կյանքի կկոչեն աշխատավորական լայն մասսաներին, է՛լ ավելի կմոբիլիզացնեն նրանց բոլոր ուժերը կոմունիզմի հոյակապ կառուցումները ավարտելու, կոմունիստական հասարակակարգի կառուցման համար մղվող պայքարում։

Ամեն անգամ ընտրությունները մեր երկրում վեր են ածվում համաժողովրդական տոնակատարության։ Ժողովուրդը իր արժանավոր զավակներին առաջադրելով պետական իշխանության Գերագույն օրգաններում՝ նակազ է տալիս՝ աշխատել անձնվիրաբար, լինել լենինյան-ստալինյան, տիպի պետական գործիչ, ուրիշ այլ շահեր չունենալ, բացի ժողովրդի, Հայրենիքի շահերից։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախորդ ընտրություններից անցել է չորս տարի։ Այդ կարճատև, բայց բովանդակությամբ հարուստ ժամանակաշրջանը հագեցված է մեծագույն իրադարձություններով և զուգադիպեց հետպատերազմյան նոր հնգամյակին։ Սովետական ժողովուրդը, այդ թվում Սովետական Հայաստանի աշխատա-

վորները, ընկեր Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ հաջողությամբ իրականացրել են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հետպատերազմյան նոր հնգամյակի խնդիրները, հետևողական կերպով պայքարում են աշխարհում կայուն և երկարատև խաղաղության ապահովելու համար։ Սովետական Միությունը խաղաղության հուսալի պատվարն է ամբողջ աշխարհում։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից հետո անցած ամբողջ ժամանակաշրջանում Սովետական Հայաստանի աշխատավորները իրենց աշխատանքի ու պայքարի մարտական ծրագիրն են դարձրել ընկեր Ստալինի 1946 թվի փետրվարի 9-ին Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների առաջ արտասանած պատմական ճառը։ Ընկեր Ստալինը իր այդ նշանավոր ճառում հանրագումարի բերեց Հայրենական Մեծ պատերազմի արդյունքները, բնութագրեց նախապատերազմյան ժամանակաշրջանում և պատերազմի դաժան փորձությունների տարիներին բոլշևիկյան պարտիայի քաղաքականությունը, նշեց պարտիայի և սովետական ժո-



ղովրդի հետագա գործունեության ծրագիրը մոտակա ժամանակում և ավելի երկարատև ժամկետի համար։ Ընկեր Ստալինը խոսելով կոմունիստական պարտիայի մոտիկ ապագայի աշխատանքի պլանների մասին, նշեց, որ դրանք շարադրված են նոր հնգամյա պլանում, իսկ «նոր հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են՝ վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև քիչ թե շատ զգալի չափով գերազանցել այդ մակարդակը...»։ Ինչ վերաբերում է ավելի երկարատև ժամանակաշրջանի պլաններին, ընկեր Ստալինը նշեց ժողովրդական տնտեսության զարգացման կոնկրետ խնդիրներն ու հեռանկարները. այն է՝ եռապատիկ չափով գերազանցել մեր արդյունաբերության մինչպատերազմյան մակարդակը, հասնել այն բանին, որ մեր արդյունաբերությունը յուրաքանչյուր տարի արտադրի մինչև 50 միլիոն տոննա չուգուն, մինչև 60 միլիոն տոննա պողպատ, մինչև 500 միլիոն տոննա ածուխ և մինչև 60 միլիոն տոննա նավթ։

Սովետական Հայաստանի աշխատավորները ՍՍՌՄ-ի միասնական մեծ ընտանիքի

ժողովուրդների հետ միասին ջերմորեն պաշտպանելով մեր Հայրենիքի հետագա զարգացման ստալինյան հոյակապ հնգամյա պլանը, հաջողությամբ կենսագործեցին այն և հասան պատմական վիթխարի հաղթանակների։ Այսպիսով, խոսելով Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից հետո անցած ժամանակաշրջանում Սովետական Հայաստանի ձեռք բերած նվաճումների մասին, նշանակում է հանրագումարի բերել այն հաջողությունները, որին հասել ենք հետպատերազմյան նոր հնգամյակում։

## Արդյունաբերության գծով

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից հետո անցած չորս տարիների ընթացքում ռեսպուբլիկայի սոցիալիստական արդյունաբերությունը զարգացման մեծ ուղի է անցել։ Նոր հնգամյա պլանը փառապանծ էտապ էր մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում։ Այն փայլուն հեռանկարներ բացեց ինչպես ՍՍՌՄ-ի եղբայրական բոլոր ռեսպուբլիկաների, այնպես էլ Հայկական



Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի համար։ Հնգամյա պլանով սահմանվել էր, որ Սովետական Միության ամբողջ արդյունաբերության արտադրանքը 1950 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, պետք է ավելանա 48 տոկոսով։ Մեր արդյունաբերությունը մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձի օրը, այսինքն մինչև 1950 թվականի նոյեմբերի 7-ը, ոչ միայն հասավ արտադրության այդ մակարդակին, այլև զգալիորեն գերազանցեց այն։ 1949 թվականի չորրորդ եռամսյակում համախառն արտադրանքի միջին ամսական թողարկումը 1940 թվականի մակարդակը գերազանցեց 53 տոկոսով։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման գծով նախապատերազմյան մակարդակը 1950 թվականի 11 ամիսների ընթացքում գերազանցվել է 72 տոկոսով։ Հետպատերազմյան հնգամյակում ՍՍՌՄ-ում վերականգնվել և նոր կառուցվել է մոտ 6.000 արդյունաբերական ձեռնարկություն, չհաշ-

ված պետական ու կոոպերատիվ մանր ձեռնարկությունները։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեծ, համերաշխ ընտանիքում նույնպիսի հաջողությունների է հասել Սովետական Հայաստանի արդյունաբերությունը։ Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո, ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1946 թվականին ավարտեց վերակառուցումը և անցավ խաղաղ արտադրանքի թողարկման։ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար ընկ. Գր. Հարությունյանը Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարում ՀԿ(բ)Պ Կենտկոմի աշխատանքի մասին տված հաշվետու զեկուցման մեջ նշել է, որ 1946 և 1947 թվականներին, հետպատերազմյան հնգամյակի առաջին երկու տարիների ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերությունն իր պլանը կատարեց 102 տոկոսով։ 1947 թվականին համախառն արտադրանքի աճը նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ կազմեց 136,8 տոկոս։ 1948 թվականի միայն 10 ամսվա պլանը կատարվեց 105,2 տոկոսով, նախորդ 1947 թվականի



համապատասխան ժամանակաշրջանի արտադրանքը գերազանցելով 21,7 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը 1947 թվականին 25,1 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը։ Սովետական Հայաստանի արդյունաբերությունը նոր փայլուն հաջողությունների հասավ առանձնապես հնգամյակի վերջին երկու տարում։ Ռեսպուբլիկայի կապիտալ շինարարության ծավալը 1949 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացավ 43 տոկոսով, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ համախառն արտադրանքը կազմեց 215 տոկոս։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1949 թվականին երկու անգամից ավելի շատ արտադրանք է տվել, քան 1940 թվականին։ Մեր արդյունաբերական ձեռնարկությունները ավելի բարձր ցուցանիշների հասան 1950 թվականին. բավական է նշել, որ ընթացիկ տարվա 11 ամսվա պլանը կատարվեց 103,6 տոկոսով, իսկ ավելի քան 150 արդյունաբե-

րական ձեռնարկություններ կատարեցին և գերակատարեցին տարեկան պլանները։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականի 11 ամիսների ընթացքում 1949 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 27 տոկոսով։ Առաջավոր տեխնիկական պրոցեսների, աշխատանքային նոր մեթոդների ներդրման, կորուստների պակասեցման, արտադրության մնացորդների և ներքին ռեզերվների օգտագործման շնորհիվ իջեցվել է արտադրանքի մեկ միավորի համար կատարվող հումքի և էլեկտրաէներգիայի ծախսը։ Գերակատարվել են արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքները։ Միայն 1950 թվականի 10 ամիսների ընթացքում արտադրանքի ինքնարժեքն իջեցվել է 13 տոկոսով։ Անցած չորս տարիների ընթացքում ռեսպուբլիկայում շահագործման են հանձնվել տասնյակ նոր խոշոր ու մանր գործարաններ ու ֆաբրիկաներ։ Միայն հետպատերազմյան նոր հնգամյակի առաջին չորս տարիների ընթացքում ռեսպուբլիկայում շահագործման է հանձնվել



ավելի քան 50 արդյունաբերական ձեռնարկություն, իսկ ընդլայնվել և վերակառուցվել է 27 արդյունաբերական ձեռնարկություն։

Երևան քաղաքի արդյունաբերության ծավալման բազայի վրա 1950 թվականին ստեղծվեց քաղաքային նոր, հինգերորդ ռայոնը՝ Միկոյանի անվան ռայոնը, որը աչքի է ընկնում իր նոր ձեռնարկություններով։ 1945 թվականին ավարտվեց ու շահագործման հանձնվեց Քանաքեռգէսի 6-րդ ագրեգատը, և 1948 թվականին մոդեռնիզացիայի ենթարկվեց առաջին ագրեգատը։ 1946 թվականին կատարվեց Ձորագէս հիդրոտեխնիկական կառուցվածքների վերակառուցումը։ 1948 թվականի վերջերին շահագործման հանձնվեց Սովետական Միության բարդ հիդրոտեխնիկական կառուցումներից մեկը՝ Սևանի ջրընդունիչ կառուցվածքը, իսկ մի քիչ ավելի ուշ շահագործման հանձնվեց Լճային հիդրոէլեկտրակայանը, որը զգալի չափով բարձրացրեց Հայէներգոյի հիդրոկայանների կարողությունը։ Հաջողությամբ շարունակվում են Գյումուշի հիդրոէլեկտրակայանի

կառուցման աշխատանքները, որը շահագործման հանձնելով՝ պետական էլեկտրակայանների կարողությունը կաճի խոշոր չափով։

Գյումուշի շինարարության ավարտումով, — ասել է ընկ. Գր. Հարությունյանը, — և այն շահագործման հանձնելով, հզոր էներգետիկ բազա է ստեղծվում Հայաստանի հետագա արդյունաբերական զարգացման համար։ Գյումուշի շինարարության ծավալը պատկերացնելու համար բավական է նշել, որ կատարվելու է չորս միլիոն խորանարդ մետր հենց միայն հողային և ժայռային աշխատանք, 700 հազար խորանարդ մետր բետոն ու երկաթ-բետոն է լցվելու և քարե շարվածք է կատարվելու։ Կառուցվելու է մի քանի բնակելի ավան։

Ընդերքի հաջող հետախուզման, մետաղների նոր հանքավայրեր հայտնաբերելու համար ՍՍՌՄ Մինիստրների Սովետն անցյալ տարի Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչում



շնորհեց ռեսպուբլիկայի մի խումբ երկրաբանների։

Անցյալ տարի արտադրական առաջադրանքները ժամկետից շուտ կատարեցին ռեսպուբլիկայի հանքագործները՝ պլանից ավելի երկրին տալով արտադրանք։ Նրանց հաջողվեց պլանները ժամկետից առաջ կատարել, որովհետև հանքաքարի հանույթն ու մշակումը ամբողջովին մեքենայացվել է։ Թե՛ Ղափանի, թե՛ Ալավերդու հանքերում ներդրվել են վերամբարձ մեքենաներ, փոխադրողներ, հանքերում անցյալ տարվանից կիրառվում է թաց փորումը, որը զգալի չափով օգնում է արտադրողականության բարձրացմանը։ Պղնձաքարի հանույթը Ղափանի և Շամլուղի հանքերում ավելի քան 50 տոկոսով ավելացվել է 1946 թվականի համեմատությամբ, իսկ սև և կարմիր պղնձի ստացումը՝ 45 տոկոսով։

Վերջին տարիների ծնունդ է Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը, որը սկսած անցյալ տարվանից արտադրում է

*նաև 100 կիլովատից ավելի հզորություն ունեցող գեներատորներ և տրանսֆորմատորներ։ Կարճ ժամանակում գործարանի ստեղծագործական կոլեկտիվին հաջողվել է բարձրացնել արտադրանքի որակը։ Միության տարբեր քաղաքներից ու արդյունաբերական ձեռնարկություններից գործարանն ստանում է բազմաթիվ նամակներ, որոնց հեղինակները գովեստի ջերմ խոսքեր են ասում էլեկտրամեքենաշինարարներին՝ բարձրորակ արտադրանքի համար։*

*Վերջին տարիներին շահագործման է հանձնվել նաև Երևանի Կաբելի, «Ավտոդետալ», Ավտոդողերի. Սուպերֆոսֆատի, Նուրբ մահուդի, Կաշվի-ղալանտերեայի գործարանները, Մահուդի ֆաբրիկան և այլ խոշոր ձեռնարկություններ։*

*Նոր հնգամյակում լայն թափով ծավալվեց Համամիութենական սոցիալիստական ստեղծարար մրցությունը, պայքար կազմակերպվեց շրջանառու միջոցների շրջանառությունը արագացնելու, սոցիալիստական կուտա-*



*կումներն ավելացնելու, գործարանների շահութաբերությունը և մարկան բարձրացնելու համար։ Թեթև, Սննդի, Տեղական, Շինանյութերի արտադրության, Անտառային և Թղթի արդյունաբերության, Կոմունալ տնտեսության և այլ մինիստրությունների ու գերատեսչությունների ձեռնարկությունները հաջողությամբ կատարեցին իրենց առաջ դրված խնդիրները։ Հայկական ՍՍՌ Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները 1950 թվականին 40 տոկոսով ավելի արտադրանք տվեցին, քան 1949 թվականին։ Հիմնականում ավարտվեց Երևանի Նուրբ մահուդի ֆաբրիկայի մանվածքային կորպուսը, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում ավարտվեց մետաքսյա սպիտակեղենի ցեխի շինարարությունը։ Լենինականի Գուլպա-տրիկոտաժ ֆաբրիկան դարձել է անճանաչելի։ Նա այժմ արտադրում է բարձրորակ կապրոնե, վիսկոզե գուլպաներ, տղամարդկանց բարձրորակ վերնաշապիկ և կանանց մետաքսյա սպիտա-*

կեղեվի զանազան տիպի նուրբ գործվածքներ։ Միայն 1950 թվականին արտադրության մեջ է մտցվել վերնատրիկոտաժի նոր 12 տեսակ։ Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում գերազանց որակի արտադրանք թողարկելու մրցությանը մասնակցում է 145 բրիգադա, որտեղ ընդգրկված է 1500 բանվոր։ Միայն 1950 թվին մինիստրության կոլեգիայի որոշմամբ 21 բրիգադայի շնորհվել է «գերազանց որակի բրիգադայի» կոչում։

Լուրջ հաջողություններ են ձեռք բերել ռեսպուբլիկայի մետաղամշակման ձեռնարկությունները, առանձնապես Երևանի Ձերժինսկու անվան դազգահաշինական գործարանը։ Ս. Մ. Կիրովի անվան գործարանը անցած տարիներին մի քանի անգամ ավելացրել է թողարկվող արտադրանքը, իջեցրել ինքնարժեքը։

Խոշոր աճի է հասել ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությունը, որն ունի ավելի քան 31 ճյուղ և թողարկում է ավելի քան 400 տեսակ զանազան արտադրանք, Երևանի և Ալրումի կոնսերվի գործարանները ժամկետից



շուտ կատարեցին հնգամյա պլանը և երկրին պլանից դուրս տվին մի քանի միլիոն պայմանական տուփ կոնսերվ։ Ռեսպուբլիկայում կան ավելի քան 25 գինեգործական գործարան և կայան։ Սովետական իշխանության առաջին տարիներին գինու և կոնյակի նկուղների տարողությունը Հայաստանում կազմում էր մի քանի հարյուր դեկալիտր, իսկ այժմ միայն «Արարատ» տրեստի սիստեմում այն հասնում է ավելի քան մեկ միլիոն դեկալիտրի։ Հետպատերազմյան ստալինյան նոր հնգամյակում կազմակերպվեցին կոնյակի և շամպայնի կոմբինատներ։ Այժմ Սովետական Հայաստանում արտադրվում են ավելի քան 45 տեսակ գինիներ, կոնյակներ, լիկյորներ։

Պետական հացի արդյունաբերությունը սննդարդյունաբերության խոշոր ճյուղերից է։ Ներկայումս ռեսպուբլիկայում Հացի տրեստի սիստեմում գործում են 23 խոշոր ձեռնարկություն, որոնք օրական տալիս են մի քանի հարյուր տոննա արտադրանք։ 1950 թվականին հացի և խմորեղենի արտադրանքը, նախապատերազմյան 1940 թվականի

համեմատությամբ, աճեց 1.7 անգամ, օճառինը՝ 1,8 անգամ, հրուշակեղենինը՝ 1,7 անգամ, գլանակներինը՝ 2,4 անգամ, հանքային ջրերինը՝ 1,7 անգամ։

Խոշոր չափերով ծավալվել է շինանյութերի արտադրությունը։ Միայն Արթիկ տուֆը երկրին տալիս է ավելի քան 200 հազար խորանարդ մետր տուֆ, որը շինարարության մեջ փոխարինում է 100 միլիոն աղյուսի։ Տուֆի արտադրությունը վերջին յոթ տարիների ընթացքում աճել է 272 անգամ, իսկ 1950 թվականին, 1946 թվականի համեմատությամբ, աճել է 484 տոկոսով։ Քարի արդյունահանության բնագավառում գործադրվում են սովետական գյուտարար Ստոլյարովի կոնստրուկցիայի քարհատ մեքենաները։ Արթիկի, Պեմզաշենի, Անի-պեմզայի ձեռնարկություններում հիմնվել է տուֆի հարթման գործարան, որտեղից վերամշակված քարը փոխադրվում է կառուցումների համար։ Շինարարության մեջ մեծ չափով օգտագործվում է մարմարը, պեմզան, գրանիտը և այլ շինանյութեր։ Շինանյութեր արտադրող ձեռնարկություններից է Երևանի Ապակու-մուլիտի գործարանը, որը արտադրում է բոլոր չափսերի պատուհանի ապա-



կի, հայելի, գործարանն արտադրում է նաև ձուլած մուլիտի հրակայուն աղյուսներ, որոնք պատրաստվում են էլեկտրա-վառարաններում կավանյութերը շիկացնելու և ապա համապատասխան ձևերի մեջ փոխադրելու միջոցով։ Այս գյուտը և գործարանի սարքավորման կոնստրուկցիան ամբողջովին պատկանում են Սովետական Հայաստանի արտադրության նորարար ինժեներներին. տեխնիկներին և առաջավոր բանվորներին։

1949 թվականի համեմատությամբ 1950 թվականին 40 տոկոսով ավելի արտադրանք տվեցին ռեսպուբլիկայի տեղական արդյունաբերության ձեռնարկությունները, իսկ ժամկետից 10 օր շուտ իրենց տարեկան պլանները կատարեցին Հայկական ՍՍՌ Անտառային և թղթի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները։

Հետպատերազմյան նոր հնգամյակում մեծ չափով զարգացավ լայն սպառման ապրանքների արտադրությունը։ Հայաստանի արհեստագործական կոոպերացիան այժմ ունի 120 արտել՝ 860 արդյունաբերական ձեռնարկություններով, որտեղ աշխատում են մի քանի հազար մարդ։ Արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունները թո-

ղարկում են ավելի քան 500 տեսակ զանազան առարկաներ, ըստ որում 450 տեսակը նախատեսված է լայն սպառման համար։ Հայաստանի արհեստագործական կոոպերացիայի համախառն արտադրանքը 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, աճել է 211 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում կոշիկի արտադրությունն աճել է 203 տոկոսով, կահույքինը՝ 290 տոկոսով։ Միայն 1948—1950 թ. թ. յուրացվել է արտադրանքի 55 նոր տեսակ։

Մեծ աշխատանք է կատարվել կապի՝ ռադիոֆիկացիայի, հեռախոսային և հեռագրային ցանցի գծով։

Սովետական Հայաստանը լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության շնորհիվ դարձել է ՍՍՌՄ-ի առաջավոր ռեսպուբլիկաներից մեկը։ Այն աչքի է ընկնում քիմիական, լեռնային, մետաղամշակման, էլեկտրաշինարարության, ծանր և թեթև արդյունաբերության բազմաթիվ և բազմատեսակ ճյուղերով։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները օր-օրին ծավալելով սոցիալիս-



տական մրցությունը, պայքարում են երկրին ավելի շատ և բարձրորակ արտադրանք տալու, արտադրության առաջավորների և նորարարների փորձը արմատավորելու, սովետական առաջավոր տեխնիկայի նվաճումները ավելի շահութաբեր օգտագործելու համար։

Աննախընթաց վերելք է ապրում Սովետական Հայաստանի արդյունաբերությունը։

(Շարունակությունը հաջորդ համարում)

—O—

## ԹԵՄԱՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 27-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ ԿԱՐԴԱՑՎԵԼԻՔ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը:

2. Լենինը բոլշևիկյան մեծ պարտիայի ստեղծողն ու առաջնորդն է:

3. Լենինը աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծողն ու ղեկավարն է:

4. Լենինի և Ստալինի մեծ բարեկամությունը:

5. 27 տարի առանց Լենինի, ընկեր Ստալինի առաջնորդությամբ՝ լենինյան ուղիով:

6. Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամությունը լենինիզմի գաղափարների մարմնավորումն է:

7. Լենինիզմը Սովետական Միության ժողովուրդների դրոշն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում:



8. Լենինիզմը աշխատավորների կոմունիստական դաստիարակության հիմքն է:

9. Լենինիզմը ամբողջ աշխարհի աշխատավորների դրոշն է իմպերիալիստական լծից ազատագրվելու համար մղվող պայքարում:

10. Լենինիզմը ժողովուրդների դրոշն է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում:

11. Լենինի-Ստալինի պարտիան կոմունիստական հասարակակարգի կառուցման համար մղվող պայքարում ղեկավարող և ուղղություն տվող ուժն է:

—O—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

ՍԵՐՎԱՆՏԵՍ.— *Դոն Կիխոտ, 2-րդ հատոր։ 570 էջ, գինը 22 ռ. 90 կոպ.։*

Վ. Մ. ԱԲԱԼԱԿՈՎ.— *Ալպինիզմի հիմունքները։ 190 էջ, գինը 3 ռ. 35 կոպ.։*

Ի. Ա. ԿՐՅԱԶԿՈ.— *Ֆիզիկական կուլտուրա։ 161 էջ, գինը 6 ռ. 30 կոպ.։*

Ի. ՎԱՍԻԼԵՆԿՈ.— *Աստղիկը։ 143 էջ, գինը 3 ռ. 20 կոպ.։*

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ, ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ.— *Օգնություն ագիտատորին, 43 էջ, գինը 50 կոպ.։*

Ռ. Ի. ԴԱՆԻԵԼՅԱՆ.— *Բամբակի բերքահավաքի աշխատանքի կազմակերպումը։ 33 էջ, գինը 60 կոպ.։*

Գ. Պ. ՋԱՔԱՐՅԱՆ.— *Կերերի նախապատրաստությունը։ 57 էջ, գինը 1 ռ. 10 կոպ.։*

Ա. ՄԻԽԱՅԼՈՎ.— *Արևի և լուսնի խավարումները։ 47 էջ, գինը 90 կոպ.։*

Գ. ՂԵՎՈՆԴՅԱՆ.— *Երեխաների առողջության պահպանությունը ՍՍՌՄ-ում։*



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Գինը 50 կոպ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“-Ի
# 1951 ԹՎԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է Սոյուզպեչատի և փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում մամուլի հասարակական լիազորների մոտ*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**12 ամիս 24 համար— 12 ռուբլի**

**6 ամիս 12 „ — 6 „**

**3 ամիս 6 „ — 3 „**

**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**